# Ամառը գյուղում

ԼՅՈՒԴՎԻԳ ԴՈՒՐՅԱՆ

Ամեն ամառ գյուղ եմ գնում,
Լինում եմ իմ տատին հյուր,
Գիշերները դրսում քնում
Ու շնչում եմ ծաղկի բույր:
Երբ զարթնում եմ, տեսնում եմ ի՞նչ,
Տատս անցել է գործի,
Ասում եմ՝ թող օգնեմ մի քիչ,
Մեկտեղ հարենք խնոցին:
Ու խնոցին արագ-արագ
Գնում է ու ետ գալիս...
Եվ քիչ հետո տատս կարագ
Ու մեղըր է ինձ տալիս:
Հետո գնում եմ մեր այգին,
Ջալանգին էլ եմ տանում,
Կանչում եմ իմ ընկեր Հայկին,
Վազվզում ենք, խաղ անում:
Իսկ երբ իջնում է երեկոն,
Քեռիս գալիս է սարից,
Նրա համար ես կուլայով
Ջուր եմ բերում աղբյուրից:
Խմում է ու ասում՝ ապրես,
Միշտ պաղ ջուր տաս հոգնածին,
Իսկ տատիկս կանչում է մեզ՝
Եկե՛ք, նստում ենք հացի:
Ու փռվում է ճաշի բույրը՝
Հայտնվում է և կատուն,
Տատիս եփած թանապուրը
Այնպես սիրով ենք ուտում:
Ու բոլորս հետո քնում,
Քնում ենք խոր ու հանգիստ...
Ամեն ամառ գյուղ եմ գնում,
Հյուր եմ լինում տատիկիս:

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ



# ՍԼԱՔՆԵՐԸ դեպի քարանձավն էին ցուցադրում

ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ



Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

Ես ոչ մի մեղք չունեի, որ բնությունն ինձ երաժշտական լսողություն չէր տվել։ Երգեցողության դասերին ընկեր Պապայանն ինձ «կավիճ բերելու» էր ուղարկում։

—Լսողություն չունես,—ասում էր,—պատահում է, երգելու կարիք չկա, մյուսներին էլ կարող ես խանգարել։

Ես չէի նեղանում, բայց մի օր դասամիջոցին Արտաշը քմծիծաղով ասաց.

—Դմբոները լինում են երկու տեսակ՝ երաժշտական և ոչ երաժշտական։ Երաժշտական դմբո կոչում են այն դմբոյին...

Ես չթողի, որ նա խոսքն ավարտի։ Փաթաթվեցինք իրար և, հասկանալի է, հաջորդ օրը մեր ծնողներին դպրոց «հրավիրեցին»։

Այդ օրվանից էլ թշնամացանք։ Արտաշն ինձ անուն կպցրեց՝ Շալյապին։ Բայց քանի որ բոլորը ծանոթ չէին ռուս մեծ երգչին, շուտով մականունս ծամռեցին ու Շալյապինը դարձավ Շլյապա, Շլյապ, Շապ, Շ...

«Շ» տառն ինձ համար անտանելի դարձավ։

Ամառային արձակուրդներն սկսվեցին, բայց բանը դրանով չավարտվեց։ Ես էլ, Արտաշն էլ պիոներական ճամբար մեկնեցինք և Ծաղկաձորի անտառներում այս պատմության անակնկալ վախճան ունեցավ։

* * *

Խաղը հետաքրքիր էր ու խորհրդավոր։ Անտառի արահետներն աղոտ լուսավորվում էին մայր մտնող արևի լույսով։ Հետախույզը կողմնացույց առած գնում էր այդ արահետներով։ Գնալուց առաջ նա ընկեր Մուշեղից ստանում էր մարշրուտն ու ազիմուտները. հարյուր քայլ այսինչ ուղղությամբ, ապա քառասուն քայլ այսինչ... և այլն։ Ով կողմնացույցից օգտվել գիտեր, արագ ու ճիշտ հասնում էր նշանակված տեղը, ով չգիտեր, շփոթվում էր ու մոլորվում։

Այս խաղի մեջ ես հավասարը չունեի։ Երեք անգամ արդեն փորձել էի։ Երեք անգամն էլ տեղ էի հասել ճիշտ ու ժամանակին։ Այնպես որ նույնիսկ ընկեր Մուշեղն իմ անունը հիշատակեց մեր ջոկատի «մարտական գործողությունների ամփոփագրում»։ Իսկ Արտաշը խաղի մեջ առաջիններից չէր։ Երեք անգամից երկուսում նա այնպես շփոթվեց, որ մարդ ուղարկեցին նրան որոնելու։ Հրճվանքից գժվել էի։ Վերջապես եկավ մի օր, որ ես էլ կարող էի ծաղրել այդ «լսողագետին»։ Բայց ծաղրելու գործում ես չէի կարող մրցել Արտաշի հետ։ Ես նրան մոլորված ոչխար ասացի։ Լսեց, գունատվեց, լռեց ու ժպտաց...

Մի օր ընկեր Մուշեղն ասաց, որ այսուհետև հետախույզն իր ճանապարհի բոլոր շրջադարձերում պետք է կավիճով սլաքներ նկարի, որ հետևից գնացողն իմանա, թե հետախույզը որ կետում է սխալվել։ Հենց այդ երեկո էլ ինձ հետախույզ նշանակեցին, իսկ Արտաշին՝ ստուգող։ Ես ճանապարհ ընկա։ Քայլերս ուշադիր հաշվում էի

ու ամեն անգամ, նոր ազիմուտի համաձայն ուղղությունս փոխելիս, գետնին կամ մոտակա ծառի վրա կավիճով նետ սլաքներ էի նկարում: Արևն արդեն մայր էր մտնում, թավուտ անտառն ամբողջապես մթնում էր: Ճանապարհին լուսատու փտած փայտեր գտա ու դրանցից մի քանիսը գրպանս խոթեցի: Ես գիտեի, որ ճիշտ եմ գնում, բայց կողմնացույցն ինձ անտառի այնպիսի կողմն էր տանում, որտեղ մեզնից ոչ մեկը դեռ չէր եղել: Վերջապես հասա մի բացատ, որի հակառակ ծայրին մի մայր էր երևում: Կողմնացույցը ցույց էր տալիս, որ դեպի այդ մայրը պիտի գնամ: Ես վերջին սլաքը նկարեցի և շարժվեցի դեպի մայրը: Վերջին ազիմուտով պետք է գնայի երկու հարյուր քայլ: Երբ հաշվելով հասա երկու հարյուրին, նկատեցի, որ մոտ եմ մի կլոր քարանձավ: Մթնել էր, մութ. արևի վերջին շողերը չէին լուսավորում քարանձավի խորքը: Նստեցի: Արտաշը դեռ չէր երևում, նա ինձնից տասը րոպե ուշ պիտի ճանապարհ ընկներ: Անտառը խաղաղ էր: Քարանձավի խորքից ինչ-որ չրթոցներ էին հասնում ականջիս. երևի մուկ էր կամ ոզնի: Լապտեր չունեի, իսկ փտած փայտերն այնքան չէին լուսավորում, որ կարողանայի տեսնել: Քարանձավից նայում էի բացատին: Երկու նապաստակ խաղ էին անում կարճ խոտերի մեջ: Ես երբեք նապաստակների խաղ չէի տեսել ու հափշտակված դիտում էի, երբ բացատի ծայրին երևաց Արտաշը: Նապաստակները փախան: Ես շունչս պահեցի: Արտաշը կանգնեց դեմքով դեպի իմ քարանձավը ու հետո, լոք-լոք անելով, սկսեց քայլել: Ու այդ ժամանակ հանկարծ մի հիմար միտք անցավ գլխովս: Ես արագ հանգցրի փտած փայտերը...

Երևի ինքն իրեն սիրտ տալու համար, Արտաշը բարձրաձայն էր հաշվում:

— Հարյուր իննսունինը, - լսվեց քարանձավի մուտքի մոտ:

Այդ ժամանակ ես առաջ պարզեցի լուսատու փտած փայտերն ու բարձր մռնչացի.

— Բո՜...

— Վա՜յ, - լսվեց Արտաշի ձայնն ու մի թմփոց...

Ես դուրս թռա քարանձավից:

Դարձի ճանապարհին նա դողում էր և ամուր բռնել էր ձեռքս: Ամեն չրթոցից ցնցվում էր ու կպչում ինձ: Սկզբում դա ինձ դուր էր գալիս, մտքումս չարախնդում էի. «Կերա՞ր, վախկոտի

## ԼՈՒՍԱԲԱՑԸ ԾԱՂԿԱՁՈՐՈՒՄ

ԼԵՎՈՆ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Ծառեր, ծառեր,
Շարան-շարան,
Ծաղկուն լանջեր,
Գետը՝ պարան:
Խորհրդավոր
Մի լուսաբաց,
Աչքն է թարթում
Կամաց-կամաց:

Արթնանում են
Ծիտ ու թռչուն,
Ծլվլում են,
Դես-դեն թռչում
Ու հնչում է
Շեփորը մեր՝
Ելե՜ք, ելե՜ք
Պիոներներ:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ



մեկը, դե հիմա էլ ասա՝ դմբոնները լինում են երկու տեսակ...» Բայց կամաց-կամաց չարախնդալու ցանկությունս անցավ, հետո սիրտս սողոսկեց զղջման զգացումը։ Այսպես հո մարդուն կարելի է նաև խելագարեցնել։ Դեռ լավ է, որ Արտաշն այնքան էլ վախկոտներից չէր։ Նրա տեղը ես լինեի, հիմա լեղիս ճաքել էր արդեն... Ի՜նչ հիմարություն արի։ Ախր Արտաշը լավ էլ տղա էր, ճիշտ է, մի քիչ ծաղրում էր ինձ, ինչ անենք, ախր ես էլ տակ չէի մնում։ Տարբերությունն այն էր միայն, որ երբ նա ինձ Շալյապին էր ասում, ես բարկանում էի, իսկ երբ ես նրան «մոլորված ուղտ» ասացի, նա լռեց. լռեց ու ժպտաց։

Աստիճանաբար Արտաշը հանգստանում էր, բայց, զարմանալի է, իմ զղջումն ավելի էր շատանում։ Հիմա արդեն ես էի բռնել նրա ձեռքը, իսկ նա գլուխը կախել էր ու, թվում է, հազիվ էր լացը զսպում։

—Արտաշ։

—Հը՞։

—Ներողություն, ես հիմարություն արի։

Լռեց։

—Արտաշ։

—Հը՞։

—Հիմա կգնանք, ես ընկեր Մուշեղին ամեն ինչ կխոստովանեմ, թող պատժեն, թեկուզ թող հեռացնեն ճամբարից։

—Հիմար-հիմար մի՛ խոսի,—ասաց տխուր։

Մենք արդեն ճամբար էինք հասնում, արդեն երևում էր բացատում բոցկլտացող խարույկը։ Ես կանգ առա։

—Արտաշ ջան։

—Հը՞։

—Ինձ ասա՝ դմբոնները լինում են երկու տեսակ, ասա՝ Շալյապին։

—Վե՛րջ տուր։

—Թե չէ ճամբար չեմ գա։

—Ո՞նց թե։

—Չեմ գա, կգնամ կկորչեմ.

Ես լացակումած նստեցի ճամբարի բացատի ծայրին։ Արտաշը նստեց կողքիս ու ասաց.

—Դե լավ, աղջիկ հո չե՞ս։

—Չէ, ասա՝ Շալյապին, ասա՝ դմբոնները լինում են երկու տեսակ...

—Դե լավ, Շալյապին, վե՛ր կաց, վե՛ր, մեզ սպասում են, դմբո, հրաժշտական դմբո...

Դուք լսե՞լ եք, որ մարդ երջանկանա նրանից, երբ իրեն ձեռ առնեն։ Բայց երևում է այդպես էլ է պատահում։ Այդ պահին Արտաշի ասածն ինձ համար վիրավորական չէր, ընդհակառակը, ինձ թվում էր, թե դրանից հաճելի բան երբեք չեմ լսել...



# Հեքիաթ տղայի և ռոբոտի մասին

ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Լինում է, չի լինում... ո՛չ թագավոր, ո՛չ թագավորի տղաներ, ո՛չ էլ չար կախարդներ... Լինում է մի սովորական տղա։

Մի օր այդ տղայի հայրը նրան նվիրում է մի ռոբոտ։ Տղային այնքան նման, որ իրարից չես ջոկի։ Կարծես երկվորյակներ լինեն։

—Ես շատ ուրախ եմ, որ ծանոթացա քեզ հետ,—ասում է ռոբոտը։—Մենք լավ ընկերներ կլինենք։

Ու մեկնում է ձեռքը։

Տղան էլ շփոթված մեկնում է ձեռքը։

—Շնորհակալ եմ հորեղդ, որ ինձ գնեց։ Ախր մի տարի անգործ ձանձրանում էի խանութում։

—Ու, եմն, դու ընդամենը մի տարեկա՞ն ես,—զարմանում է տղան և հպարտ ավելացնում.—Ես տասնմեկ տարեկան եմ։ Տասը տարով մեծ եմ քեզանից։

Հետո նա ինչ-որ բան է գլխի ընկնում և տարակուսանքով հարցնում.

—Իսկ ինչպե՞ս ես խոսում, եթե մի տարեկան ես։

—Ես ոչ միայն խոսել գիտեմ, այլև՝ կարդալ։

—Այ թե փչեցիր, հա՜... Վերցրու այս գիրքը, տեսնեմ ոնց ես կարդում։

—Ես կարիք չունեմ կարդալու։ Քո բոլոր դասագրքերը անգիր գիտեմ։

—Դու հրաշք-մանուկ ես,—տխրում է տղան։—




—Այ, այնպես չանես, որ քեզ անընդհատ օրինակ բերեն: Թե չէ քեզ էլի խամութ կուղարկեմ:

Տղան զգում է, որ չի ամաչում ռոբոտի հետ այդ տոնով խոսելու համար: Նա գիտե, որ ռոբոտներն զգացում չունեն: Առհասարակ նա գիտե այն ամենը, ինչ ծեռնտու է իրեն:

Բայց դու մի ասա, որ ռոբոտն էլ պակաս խելացի չէ: Նա սեղմում է մարմնի այն կոճակը, որի վրա գրված է՝ «Խոբամանկություն»:

—Ես ուզում եմ սփոփաշանել քեզ,—ասում է նա:—Դու ծույլ և անպետք տղա ես, չէ՞:

—Այո՛,—հառաչում է տղան:—Ես ծույլ եմ և անպետք:

Ռոբոտը վստահ էր, որ տղան չի վիրավորվի, քանի որ բանի տեղ չի դնում իրեն:

—Քո պատճառները վախեցրին ինձ,—ասում է նա:—Արի ես այնպիսի բան անեմ, որ դու գոհ մնաս ինձանից: Այ, օրինակ, քո փոխարեն դպրոց գնամ: Համաձա՞յն ես:

Տղայի աչքերը ուրախությունից փայլում են.

—Այն էլ ո՜նց...

Եվ նախանձում է ռոբոտին, որ առաջինը նա գլխի ընկավ այդպիսի բան առաջարկել:

Առավոտյան տղան ռոբոտին ուղեկցում է դըպրոց, իսկ ինքը գնում է փողոցներում թափառելու: Նա տեսնում է իրեն տարեկից մի աղջկա, որ մենակ գնդակ է խաղում պուրակում:

—Ես էլ խաղա՞մ քեզ հետ,—հարցնում է տղան:

—Իհարկե,—ասում է աղջիկը:—Մենակ ձանձրալի է:

—Ուզու՞մ ես մանր գանք:

—Շա՜տ եմ ուզում: Ես անչափ սիրում եմ մանգալ:

—Իսկ կարդալ ուզու՞մ ես նստենք:

—Նստենք: Ես շատ եմ սիրում կարդալ:

—Ուզու՞մ ես քեզ հետաքրքիր բաներ պատմեմ:

—Իհարկե,—ուրախանում է աղջիկը,—պատմիր:

—Իսկ պաղպաղա՞կ...

Բայց տղան անշարժ մեխվել է տեղում և չի հասկանում, թե ինչ է կատարվում իր հետ:

Աղջիկը վիրավորվում է, լաց լինում և հեռանում:

Տղան գլխիկոր վերադառնում է դպրոց և դիմավորում ռոբոտին:

—Հը՞, ի՞նչ ստացար:

—Երեք հատ «հինգ»: Բոլորն էլ զարմացել էին, թե այս ծույլ և անբան տղան ինչքան է փոխվել: Անընդհատ օրինակ էին բերում ինձ...—Նա մի պահ ժպտում է և ավելացնում.—Ներիր, բայց ես պետք է շողոքորթեմ... Ոչ թե ինձ, այլ քեզ էին օրինակ բերում...

—Գիտես, պետք չի, որ ինձ օրինակ բերեն: Ինձ ախր դուր չի գալիս, երբ ուրիշներին են օրինակ բերում, չէ՞: Ուրեմն, ես էլ չպետք է այդպես անեմ:

—Ինչպես ուզում ես,—ասում է ռոբոտը:

—Սրանից հետո էլ «հինգ» չստանաս: Այնպես արա, որ միայն «երեքներ» բերես: Ես չեմ ուզում խաբել...

—Օ՜, ես պետք է դարձյալ շողոքորթեմ,—ասում է ռոբոտը:—Դու ազնիվ տղա ես:

Եվ, այսպես, իրեն հանգստացրած, տղան վերադառնում է տուն: Բայց մի տեսակ վա՞տ է քնում գիշերը: Ինչ-որ միտք տանջում է նրան: Հիշել է պուրակի աղջկան, սակայն չի ուզում խոստովանել: Ինչու՞, ինչու՞ էր շշմած մեխվել տեղում: Կարծես մի կարևոր բան էր կորցրել:

Առավոտյան նա խնդրում է ռոբոտին.

—Այսօր դպրոց մի՛ գնա, գնա պուրակ:

—Ինչո՞ւ:

Տղան պատմում է ամեն ինչ:

—Այնպես արա, որ այսօր լաց չլինի ու չհեռանա:

Ռոբոտը ենթարկվում է և գնում է պուրակ: Աղջիկը էլի մենակ գնդակ է խաղում: Հենց որ տեսնում է ռոբոտին, վերցնում է գնդակը, դնում թևի տակ և սկսում է քայլել: Երևի կարծում է, որ դա երեկվա նույն տղան է:

Ռոբոտը հասնում է նրան և կողքից քայլում:

—Նեղացել ես ինձնից, չէ՞,—հարցնում է նա:

Աղջիկը չի պատասխանում:

—Ես հիմար եմ,—ասում է ռոբոտը,—երեկ ես ինձ խողի պես պահեցի:

Աղջիկը էլի չի պատասխանում:

—Նեղանու՞մ ես դեռ:—Ու ոչինչ հարմար չըգտնելով, ռոբոտը կրկնում է դարձյալ.—Ես հիմար եմ:

Այդ բառը շատ է դուր գալիս աղջկան: Նա դեռ չի լսել, որ որևէ մեկն այն օգտագործի իր հասցեին: Այնքան է դուր գալիս, որ նա ծիծաղում է:

Հաջորդ օրը ռոբոտն էլի է ուզում պուրակ գնալ, բայց արի տես, որ տղան թույլ չի տալիս:

— Դու դպրո՛ց գնա. այսօր վազքի մրցություն է։
— Ե՞ս էլ եմ մասնակցելու... Այսինքն, դու...
— Այո։ Բայց տես հա՜, առաջին տեղը չբռնես։ Երկրորդ կամ երրորդը։ Ավելի լավ է՝ երրորդը։ Չեմ ուզում, որ դու իմ փոխարեն գնաս, իսկ առաջին մրցանակը ստանամ ես։
— Իսկ պուրա՞կը,— խեղճ-խեղճ հարցնում է ռոբոտը։
Նա շատ է ուզում այնտեղ գնալ, անչա՛փ շատ։
— Ես չեմ թողնի, դու այդ աղջկան խաբես։ Նա քեզ հետ հաշտվեց երեկ։ Իսկ ես ուզում եմ, որ ինձ հետ հաշտվի։
— Խորամանկե՞մ,— հարցնում է ռոբոտը։
— Չէ, պետք չի։
Ինչ արած, ռոբոտը ենթարկվում է և գնում մրցության։ Իսկ տղան՝ պուրակ։ Նա մոտենում է աղջկան և խոժոռ հարցնում.
— Նեղացե՞լ ես։
— Ինչո՞ւ պիտի նեղանամ,— զարմանում է աղջիկը։
— Չէ, ես գիտեմ, նեղացել ես։ Բայց ես մեղավոր չեմ։ Ճիշտ է, ես քեզ տասը բան առաջարկեցի, իսկ դու ախր ամեն ինչին համաձայնեցիր։ Տեսնո՞ւմ ես, ես մեղավոր չեմ։ Դու ես մեղավորը։




Աղջիկը վիրավորվում է, վերցնում գնդակը ու հեռանում։
Տղան շատ մենակ է զգում իրեն։ Վերջերս նա առհասարակ հեռացել է ընկերներից, խուսափում է նրանց հանդիպել։ «Ես ամաչում եմ, ես չեմ կարող բաց ճակատով նայել ընկերներիս,— մտածում է նա և հաճույքով եզրակացնում,— այնուամենայնիվ, ճիշտ է ասում ռոբոտը, ես ազնիվ տղա եմ»։
Նա ստիպված նորից դիմում է ռոբոտի օգնությանը.
— Գնա այնպես արա, որ նա հաշտվի ինձ հետ։
— Ես երրորդ տեղը շահեցի,— պատասխանից խուսափելով, ասում է ռոբոտը։
— Չե՞ս լսում։ Գնա այնպես արա, որ հաշտվի ինձ հետ։
Ռոբոտը մեղավոր կախում է գլուխը և կմկմում.
— Չեմ կարող։
— Ճիշտ չես ասում,— բարկանում է տղան։— Ես հենց հիմա քեզ խանութ կուղարկեմ։
— Չեմ կարող,— կրկնում է ռոբոտը,— այդ մեկը չեմ կարող։
— Խանութ կուղարկեմ,— նորից սպառնում է տղան։
— Միևնույն է,— տխրում է ռոբոտը, դա իմ ուժերից վեր է։
— Ուրեմն, կան բաներ, որտեղ դու անզո՞ր ես,— ապշում է տղան։
— Այո,— խոստովանում է ռոբոտը։— Հիմա ամեն ինչ միայն քեզնից է կախված։
Տղան գլխիկոր էլի պուրակ է գնում։
Աղջիկը, ինչպես միշտ, գնդակ է խաղում մենակ։
Տղան լուռ ու մունջ կանգնում է հեռվում և չի համարձակվում մոտենալ։ Իսկ աղջիկը իսկի չի էլ նայում նրա կողմը։
«Չգնա՞մ ժապավենից քաշեմ,— չարացած մտածում է տղան,— չգնա՞մ գնդակը փախցնեմ»։
Բայց անշարժ կանգնել է նույն տեղում։ Կանգնում է, կանգնում և ահա պատրաստվում է հուսահատ ետ դառնալ, երբ հանկարծ լսում է աղջկա ձայնը.
— Ու՞ր ես գնում։ Արի միասին խաղանք։
Տղան ուրախ ընդառաջ է վազում, և նրանք սկսում են գնդակ խաղալ։
— Դու հիմար ես,— ասում է աղջիկը և ծիծաղում։
Տղան չգիտի պատմությունը, բայց չի նեղանում։
«Ճիշտ է, ես հիմար եմ,— մտքում ասում է նա ինքն իրեն,— ես ընդունում եմ դա, որովհետև... որովհետև ես»....
— Ինչ տեսակ կոնֆետ ես սիրում,— խաղի ժամանակ հարցնում է աղջիկը։
— Ամեն տեսակ։
— Ես էլ։ Բայց չեմ սիրում, երբ թուղթը կպչում է։
— Ես էլ չեմ սիրում, երբ թուղթը կպչում է։
Տղան մի պահ կիսատ է թողնում խաղը, նայում աղջկան ու որոշում է ամեն ինչ պատմել։

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ





# ՍՊԱՍՈՒՄ ԵՆՔ, ԸՆԿԵՐ

ՎԼԱԴԻՄԻՐ ՄԱՅԱԿՈՎՍԿԻ

*Սովետական մեծ բանաստեղծ Վլադիմիր Մայակովսկուն այսօր կարդում են ամբողջ աշխարհում: Ամենուր հնչում է նրա բանաստեղծական հատու ձայնը: Եվ հիմա, երբ լրանում է նրա ծննդյան 75 տարին, սովետական ժողովրդի հետ Մայակովսկու հոբելյանը նշում են նաև բանաստեղծի արտասահմանյան միլիոնավոր երկրպագուները: Մայակովսկին երեխաների լավ բարեկամն էր և հաճախ էր գրում նաև նրանց համար:*

Ամեն կողմից երգում,
ճչում,
Մանուկներն են ուրախ կանչում.
— Հեյ ջա՜ն.
Եկան
Օրեր գարնան,
Բարի գալուստ,
Սարյակներ ջան:
Ջով խոտերում
Ու ոստերում
Ձեր բներն են,
Ձեր տներն են:
Կերի համար
Կա անհամար
Որդ ու մոծակ
Տեսակ-տեսակ:
Սարյակները չեն եկել դեռ.





Արդե՞ն:

— Հիմա:

— Բայց ե՞րբ:

— Քիչ հետո:

— Իսկ գիտնականները հաստա՞տ գիտեն: Այսօր անպայման կլինի՞:

— Աչքովդ կտեսնես:

Երեխաները սեղմվեցին իրար, ինչպես ծաղիկները, ինչպես մոլախոտերը, հրմշտում էին, խռնվում էին, և ամեն մեկը կամենում էր տեսնել թաքնված արևը:

Անձրև էր գալիս:

Անձրև էր գալիս յոթ տարի շարունակ՝ հազարավոր օրեր, որոնք անձրևախեղդ էին եղել, որոնք բաղկացած էին միայն անձրևից: Հեղեղի բվվոց ու դղիրդ, կարկուտի բյուրեղյա ջրվեժներ, մոլեգնող փոթորիկներ, որոնք ասես կղզիներ կլանող ցունամիներ լինեին: Անձրևը ոչնչացրել էր հազարավոր անտառներ, և հազարավոր անգամներ նրանք հարություն էին առել, որպեսզի վերստին զոհաբերվեն անձրևին: Միշտ այսպես էր եղել Վեներա մոլորակի վրա, և այդ գիտեին միայն դասարանում հավաքված դպրոցականները՝ այն տիեզերագնացների երեխաները, որոնք ժամանել էին անձրևային այս աշխարհը յուրացնելու և իրենց կյանքն այստեղ ապրելու համար:

— Վերջանո՜ւմ է, վերջանում է:

— Ճի՜շտ է:

Մարգոն կանգնած էր քիչ հեռու, հեռու այն երեխաներից, որոնք ոչ մի րոպե չէին ապրել առանց անձրևի, անձրևի, անձրևի... Նրանք ինը տարեկան էին, և, եթե նույնիսկ յոթ տարի առաջ եղել էր մի այնպիսի օր, երբ արևը ծագել էր մեկ ժամով ու իր դեմքը ցույց տվել զմայլված աշխարհին, նրանք չէին կարող հիշել: Գիշերները Մարգոն երբեմն լսում էր, թե նրանք ինչպես են շուռումուռ գալիս աղոտ տեսիլքներից անհանգստացած: Եվ Մարգոն գիտեր, որ նրանք երազում տեսնում են ոսկի կամ դեղին մատիտ, կամ վիթխարի մի դրամ, որի դիմաց հնարավոր է գնել ամբողջ աշխարհը: Մարգոն գիտեր. նրանք ջերմություն են զգում. տաք ալիքն այդպես է հանկարծ ողողում մարդու դեմքը, հոսում ամբողջ մարմնով, հասնում ձեռքերին, ոտքերին: Իսկ արթնանալով, նրանք ամեն անգամ լսում էին տանիքի, արահետի, այգիների, անտառների վրա թափվող թափանցիկ հուլունքների անվերջանալի հոսանքի միապաղաղ թմբկահարության ձայնը:

Երեկ ամբողջ օրը նրանք դասարանում կարդում էին արևի մասին: Թե որքան է նա նման կիտրոնի, թե որքան ջերմ է նա: Եվ երեխաները արևի մասին փոքրիկ պատմվածքներ ու բանաստեղծություններ գրեցին:

## ԹՌՉՈՒՆ, Ե՞ՐԲ ԿՍԿՍՎԻ ԱՐԴՅՈՔ ՁԵՐ ՉՈՒՆ

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Պիտի անցնեն ծովեր,
գետեր:
Ու մագլցում են անհամբեր
Պիոներները բարդին ի վեր:
Նստել է մեկն ահա ճյուղին,
Հեռադիտակ դրել քթին:
— Ա՛յ թե հանկարծ դառնամ թռչուն,
Թռչեմ արագ, տանեմ ողջույն, —
Ասում է նա, բայց ո՞նց թռչի,
Նա տղա է, սարյակ հո չի՞:
Որոտի պես փողն է հնչում,
Թմբուկներն են թնդում-կանչում,
Գոռոց,
աղմուկ,
ճիչեր,
ծափեր.
— Բարի գալու՛ստ,



ջա՛ն սարյակներ:—
Բայց իզուր են այդ ճիչերը,
Դեռ չեն եկել սարյակները.
Հեռու դաշտում,
այգում,
սարում
Գարնան գալուն են սպասում:
Մանուկները վշտանում են,
Քիչ է մնում՝ բույնը մտնեն,
Որ թե հանկարծ սարյակը գա,
Ասեն.
— Ուշ է, էլ տեղ չկա՛...—
Կուզենայի,
Որ միշտ մի բան
Մանուկները չմոռանան.
— Ընկե՛ր, սիրի՛ր թռչուններին,
Բայց ուշք դարձրու նաև գործին:

## ԱՄԱՌԸ ՄԵԿ ՕՐՈՒՄ

ՌԵՅ ԲՐԵԴԲԵՐԻ

Իմ կարծիքով արեգ՛ակը մի ծաղիկ է,
Որ ծաղկում է ։րկ մի ժամով:

Այսպես գրեց Մարգոն: Մեղմ ձայնը այս բանաստեղծությունը կարդում էր սկված դասարանում, իսկ դրսում անձրև էր գալիս:

— Բանաստեղծությունը դո՛ւ չես հորինել,— գոչեց տղաներից մեկը:

— Ե՛ս եմ հորինել,— ասաց Մարգոն,— ե՛ս...

— Ուիլյամ,— միջամտեց ուսուցչուհին:

Բայց դա երեկ էր: Այժմ անձրևը մեղմացել էր, և երեխաները խռնվել էին հսկայական պատուհանների մոտ:

— Որտե՞ղ է ուսուցչուհին:

— Հիմա կգա:

— Ախր որտե՞ղ է: Հանկարծ չենք տեսնի...

Նրանք անհանգիստ էին, սրընթաց պտտվող անվաճաղերի պես:

Մարգոն կանգնել էր առանձին: Նազուկ, հիվանդագին աղջիկն այնպիսի տեսք ուներ, ասես մի քանի տարի անձրևի տակ էր եղել և անձրևը լուծել էր նրա աչքերի երկնագույնը, նրա շուրթերի կարմրությունը, վարսերի դեղինը: Նա հին, գունաթափ մի լուսանկար էր՝ փոշոտ ալբոմից հայտնաբերված, ու երբ խոսում էր, մի բան, որ հազվադեպ էր պատահում, ձայնը ուրվականի նման էր: Հիմա, առանձին կանգնած, նա անթարթ նայում էր անձրևին, հաստ ապակիներից այն կողմ գտնվող աղմկոտ, խոնավ աշխարհին:

— Ի՞նչ կա այնտեղ,— հարցրեց Ուիլյամը:

Մարգոն լուռ էր:

— Երբ հարցնում են՝ պատասխանի՛ր:

Ուիլյամը հրեց աղջկան: Սակայն Մարգոն անշարժ կանգնել էր, ասես չզգաց, որ իրեն հրեցին:

Երեխաները ետ քաշվեցին Մարգոյից, չէին կամենում նայել նրան: Մարգոն զգում էր, որ նրանք խուսափում են իրենից: Եվ պատճառն այն էր, որ նա երբեք մասնակցություն չէր ունենում երեխաների խաղերին, որոնք կազմակերպվում էին ստորգետնյա քաղաքի խուլ թունելներում: Որևէ մեկը կպչում էր նրան ու հետո փախչում, իսկ աղջիկը անշարժ կանգնած միայն արագ-արագ թարթում էր աչքերը: Երբ ամբողջ դասարանը երգում էր բերկրանքի, կյանքի, ուրախ խաղերի մասին, նրա շուրթերը հազիվ էին շարժվում: Միայն արևի մասին երգելիս էր, որ Մարգոն ևս, անձրևով ողողված պատուհաններին նայելով, ձայնակցում էր մյուսներին:

Սակայն Մարգոյի ամենամեծ հանցանքն այն էր,

որ Երկրից այստեղ էր ժամանել ընդամենը հինգ տարի առաջ, երբ արդեն չորս տարեկան էր, և հիշում էր արևը, նրա ոսկե ճառագայթները ու Օհայոյի կապույտ երկինքը։ Իսկ երեխաներն իրենց ողջ կյանքն ապրել էին Վեներայի վրա, նրանք անցյալ անգամ, երբ հայտնվեց արևը, ընդամենը երկու տարեկան էին ու վաղուց, շատ վաղուց մոռացել էին արևի գույնը, արևի տեսքը, արևի ճառագայթների ջերմությունը։ Իսկ Մարգոն հիշում էր։



— Արևը նման է մետաղադրամի,— աչքերը գոցելով, մի անգամ ասաց Մարգոն։

— Սո՛ւտ է,— գոչեցին երեխաները։

— Արևը նման է վառարանի կրակին,— ասաց Մարգոն։

— Սո՛ւտ է, սո՛ւտ է, դու ոչի՛նչ էլ չես հիշում,— գոչեցին երեխաները։ Բայց Մարգոն հիշում էր և, անշշուկ մի կողմ քաշվելով, նայեց անձրևաջրի առվակներով պարուրված ապակիներին։

Իսկ մի անգամ էլ, մոտ մեկ ամիս առաջ, նա հրաժարվեց ցնցուղի տակ մտնելուց։ Ձեռքերով ականջներն ու քունքերը գրկած, նա վախից ճչում էր, որովհետև ջուրը թափվում էր գլխին։ Այդ պահից էլ Մարգոն անորոշ մի զգացում ուներ, որ ինքն այնպիսին չէ, ինչպես մյուս երեխաները, և որ նրանք էլ զգում են իրենց միջև եղած տարբերությունը։

Ասում էին, որ եկող տարի ծնողները Մարգոյին իբր տանելու են Երկիր։ Ուրիշ ելք պարզապես չկար այլևս, թեև դա նշանակում էր, որ ծնողները հազարավոր դոլլարների կորուստ են ունենալու։ Լուրջ և անէական այս պատճառներով երեխաները Մարգոյին հանդուրժել չէին կարողանում։ Նրանց դուր չէր գալիս աղջկա ձյունաճերմակ դեմքը, զուսպ լռությունը, նազուկ կազմվածքը և ապագան։

— Հեռացի՛ր։— Տղան դարձյալ հրեց նրան։— Ի՞նչ ես կանգնել։

Միայն հիմա նա շրջվեց ու նայեց տղային։ Աղջկա աչքերն ասում էին, թե նա ինչու է կանգնել։

— Գիտե՛ս, մի՛ ցցվիր այստեղ,— չարացած գոչեց տղան։— Դու ոչինչ էլ չես տեսնի։

Մարգոյի շուրթերը դողացին։

— Ոչի՛նչ,— գոչեց տղան։— Մենք ենք հորինել ամեն բան, ճի՞շտ է։— Տղան դարձավ մյուսներին։— Այսօր ոչինչ էլ չի լինելու։ Ճի՞շտ եմ ասում։

— Ինչպե՞ս թե,— շշնջաց Մարգոն, անօգնական նրանց նայելով։— Ախր այսօր... գիտնականները կանխագուշակել են, որ... նրանք հայտնել են... նրանք գիտեն, որ... արևը...

— Մենք ենք հորինել քեզ խաբելու համար,— պատասխանեց տղան և՝ ցավեցնելու չափ, դարձյալ հրեց։— Հե՛յ, տղաներ, եկեք սրան փակենք մառանում։ Միայն թե շուտ, քանի ուսուցչուհին չի եկել։

— Չեմ ուզում, մի՛ արեք,— շշնջաց Մարգոն հատակին նստելով։

Երեխաները չորս կողմից վրա պրծան, բռնեցին նրան ու տարան։ Մարգոն ուզում էր դուրս պրծնել, խնդրում էր, լալիս էր, բայց երեխաները ստորգետնյա միջանցքով նրան քարշ տվեցին մի մեծ սենյակ, նետեցին մառանն ու կողպեցին դուռը։ Մառանից լսվում էին խեղդված ճիչեր, դուռը դողում էր հարվածներից։ Երեխաներն ուրախ ծիծաղով դուրս վազեցին միջանցք և դասարան վերադարձան ուսուցչուհու հետ մեկտեղ։

— Երեխաներ, պատրա՞ստ եք։— Ուսուցչուհին նայեց ժամացույցին։

— Այո՛,— միաձայն պատասխանեցին նրանք։

— Բոլորն այստե՞ղ են։

— Այո՛։

Անձրևը գրեթե դադարել էր։

Նրանք խմբով նետվեցին դեպի մեծ դուռը։

Անձրևը դադարեց։ Հայտնվեց արևը։

Արևը շատ մեծ էր, բրոնզագույն։ Նրան շրջապատել էր կուրացուցիչ կապույտ երկինքը։ Անտառն այրվում էր արևի ճառագայթներով։ Մի պահ միայն, և երեխաները ազատվելով հմայքից, ուրախ ճիչերով վազեցին գարնանն ընդառաջ։

— Շատ հեռու չգնաք,— նրանց հետևից ձայն տվեց ուսուցչուհին։— Հիշեցեք, որ մեր տրամադրության տակ երկու ժամ ունենք միայն։ Թե չէ՝ կընկնենք անձրևի տակ։



Իսկ երեխաները վազում էին, վազում էին առաջ, դեմքերը շրջած դեպի երկինք և այտերին զգալով արևի ջերմ շոյանքը: Նրանք հանեցին բաճկոնները ու ձեռքերը պարզեցին արևին:

— Ճի՞շտ է, այսպես ավելի լավ է, քան թե արևային լապտերները:

— Հարյուր անգամ է լավ:

Նրանք կանգնեցին Վեներան ծածկող անտառի, այդ զարմանալի անտառի թավուտում, որն աճում էր հենց աչքերի առջև, աճում էր անկաշկանդ, մոլեգնորեն: Արագընթաց գարնան ուժի ներքո մոտ ճյուղերը ձգվում էին դեպի վեր, ծաղկում էին, տարածվում ութոտնանու շոշափուկների պես: Տարիներ շարունակ արևի ճառագայթներից զուրկ անտառը ռետինի և մոխիրի, քարի և պանրի, թանաքի և Լուսնի գույն ուներ:



Երեխաները, ուրախ ծիծաղով, պառկել էին առաձգական գորգին և լսում էին, թե ինչպես է բուսականությունը կերկերում իրենց տակ: Նրանք վազվզում էին ծառերի միջև, սայթաքում էին, ընկնում, պահմտոցի խաղում: Բայց շատերը երկար-երկար, արցունքոտվելու չափ երկար նայում էին արևին, պարզում էին ձեռքերը դեպի զարմանալի կապույտը և ոսկեգույն լույսին, ներշնչում էին չտեսնված թարմ օդը և ագահաբար ունկնդրում էին լռությանը, ասես սավառնելիս լինեին անդորրության ու խաղաղության քնքուշ ծովի վրա: Հետո պոկվում էին տեղից և բղավելով վազում շրջանաձև, որջից դուրս պրծած գազանիկների պես: Նրանք այսպես մեկ ժամ շարունակ վազվզեցին առանց դադար առնելու:

Եվ հանկարծ...

Ուրախության ամենաթեժ պահին աղջիկներից մեկը ականջ ծակող ձայնով ճչաց:

Բոլորը քարացան:

Աղջիկը ձեռքը պարզած, կանգնել էր բացատում:

— Վա՛յ, տեսե՛ք...— թոթովեց նա:

Երեխաները անվճռական մոտեցան ու նայեցին նրա բաց ափին:

Ափի մեջ ընկած էր մի մեծ, փայլուն կաթիլ:

Եվ աղջիկն սկսեց լաց լինել:

Երեխաները նայեցին երկնքին:

— Վա՛յ: Վա՛յ...

Սառը, հատուկենտ կաթիլներն ընկնում էին նրանց քթին, այտերին, բաց բերանների մեջ: Թեթև մի ամպիկ լողաց դեպի արևը: Փչեց պաղ մի հով:

Նրանք շրջվեցին ու վերադարձան ստորգետնյա տուն: Ձեռքերն անօգնական կախ էին ընկել, ժպիտները անհետացել էին:

Որոտաց ամպրոպը: Մի ակնթարթ միայն, և նրանք քամու բերանը ընկած տերևների պես, իրար հրմշտելով նետվեցին առաջ: Փայլատակեցին կայծակները, որոնք աստիճանաբար մոտենում էին, մոտենում էին տասը կիլոմետրի վրա, հինգ, մեկ կիլոմետր, կես կիլոմետր... Հանկարծ կեսգիշերի պես խավար տիրեց:

Դռան շեմին նրանք մի պահ կանգ առան: Բայց սկսվեց վարար անձրևը, ու նրանք գոցեցին դուռը: Դրսից լսվում էր համատարած և անդադրում անձրևի խուլ բվվոցը:

— Հիմա նորի՞ց սպասելու ենք յոթ տարի:

— Այո՛, յոթ տարի:

Մեկը ձայն տվեց:

— Մարգո՛ն:

— Ի՞նչ:

— Նա դեռ մառանում է:

— Մարգո՛...



Նրանք այնպես էին կանգնել, ասես գամված լինեին հատակին: Նրանք իրար էին նայում, հետո խոնարհեցին աչքերը, նայեցին պատուհանին, որտեղ դարձյալ համառորեն, անկանգ տեղում էր անձրևը: Նրանք չէին կարողանում իրար աչքի նայել: Նրանց դեմքերը դարձան գունատ ու լրջախոհ: Նրանք նայում էին ցած՝ ձեռքներին, ոտքերին:

— Մարգո՛...

— Դե՛...— ասաց աղջիկներից մեկը:

Ոչ ոք չշարժվեց տեղից:

— Գնանք,— շշնջաց աղջիկը:

Նրանք դանդաղ քայլեցին միջանցքով: Անձրևի սառը թմբկահարությունը, քամու ոռնոցը, ամպրոպի դղիրդները, երկնագույն կայծակների չարագուշակ ցոլքերը ուղեկցում էին նրանց կրնկակոխ:

Նրանք դանդաղ սենյակ մտան ու կանգնեցին մառանի դռան առջև:

Ներսից ոչ մի ձայն չէր լսվում:

Նրանք նույնքան դանդաղ բացեցին դուռն ու դուրս թողեցին Մարգոյին:

*Ռուս. թարգմ. Կ. Ա. ՍԻՄՈՆՅԱՆԻ*

*Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ*



# ՀՈՎՀԱՆՆԵՍ ՔԵՌՈՒ, ՇՈՒՐՋՏԱՐՅԱ ԲԱԿԱՅԻՆ

Հովհաննես քեռուն առաջին անգամ հանդիպեցի Սպանդարյան շրջանի երկրորդ տնային կառավարչությունում: Եկել էր ինչ-որ գործով. վիճում էր, բացատրում, ապացուցում: Եվ նայելով արդեն վաթսունին մոտ, բարի, դեմքով և եռանդուն այդ մարդուն, ես մտածում էի, որ նա անպայման կհամոզի մարդկանց: Հետո ես նրան հարցրեցի. «Դե՛, ինչպե՞ս եղավ, հասա՞ք ձեր նպատակին...» «Իհարկե,— ասաց նա,—հիմա մեր բակային ճամբարի 65 երեխաներ միանման պիոներական առանձին արտահագուստ կունենան»:

Ես հետաքրքրվեցի. այդ ի՞նչ բակային ճամբար է, որի պիոներները արդեն առանձին արտահագուստներ են կրում: Եղա այդ ճամբարում և շատ հետաքրքիր ու զարմանալի բաներ տեսա: Դուք էլ, երեխաներ, կարող եք լինել այդ ճամբարում, ծանոթանալ պիոներների հիանալի գործերին: Եվ այնտեղ դուք շատ ուսանելի բաներ կտեսնեք, որոնք կօգնեն ձեզ ավելի օգտակար և հետաքրքիր դարձնել ձեր բակային ճամբարի կյանքը: Եկեք Թումանյան փողոցի № 62 տան բակը և ինքներդ կտեսնեք:

Իսկ մինչ այդ, ես ձեզ կպատմեմ այդ ճամբարի, Հովհաննես քեռու և այն մասին, թե ինչպես սկսվեց այդ ամենը:

...Շենքերի միջև ընկած նեղլիկ բակում ամեն վաղ առավոտ փողհար Աշոտն ու թմբկահար Արտակը ի լուր բոլոր հարևան շենքերի երեխաների ազդարարում են՝ «վեր կաց»: Ամեն վաղ առավոտ կարմիր վզկապավոր երեխաները այս բակում ելնում են մարզանքի և ապա կանգնում են պիոներական տողանի: Ջոկատավարները զեկուցում են դրուժինայի խորհրդի նախագահ՝ Պուշկինի անվան դպրոցի աշակերտ Սարգսյան Մհերին և ստանում են օրվա ռեժիմը: Երևանի Նվեր Սաֆարյանի անվան բակային ճամբարում ըսկըսվում է օրը:

Հարցնում եք ինչի՞ց սկսվեց: Ուրեմն պատմեմ: Հինգ տարի առաջ էր, ամառային արձակուրդների ժամանակ, հունիսյան մի օր, Սեդան, Հասմիկը, Արամը, Սիլվան նստած էին այս բակի մի անկյունում ու չգիտեին ինչով զբաղվել: Իսկ այդ ժամանակ քեռի Հովհաննեսն իրենց պատշգամբից նայում էր նրանց ու մտածում. «Երեխաները առավոտից մինչև երեկո քարշ են գալիս բակում, չգիտեն ինչ անել, ձանձրանում են: Պետք է օգնել նրանց»: Եվ նույն օրը քեռի Հովհաննեսը այդ միտքը հայտնեց հարևաններին: Հավաքվեցին բակի բնակիչները՝ «Երներրուդի» դիրեկտորի տեղակալ Սարգիս Թովմասյանը, աշխույժ Ազատ Ղազարյանը, Երսննդառի դիրեկտորի տեղակալ Արամայիս Յավրույանը, 3-րդ շինտրեստի կառավարիչ Բորիս Գյոդակյանը, գաջի գործարանի գլխավոր մեխանիկ Լևոն Թերլեմեզյանը և մյուսները, որոշեցին ստեղծել բակային ճամբար:

Իսկ դա հեշտ չէր. նախ՝ բակը շատ նեղ էր և հետո՝ նրա մի մասը զբաղեցված էր հարևան շենքի շինարարական աղբի կույտերով: Պետք էր տեսնել երեխաների ոգևորությունը, երբ նրանք իմացան իրենց ծնողների որոշման մասին: Եվ միանգամից գործի անցան բոլորը՝ և՛ մեծերը, և՛ երեխաները: Ճարեցին ինքնաթափ ավտոմեքենա, էքսկավատոր, բակը մաքրեցին շինարարական աղբից, ֆաներայից պատրաստեցին փոքրիկ պիոներական շտաբ, բակի մեջտեղում տնկեցին դրոշակայմ և ճամբարը բացեցին: Հինգ տարի առաջ էր:

**Անցած** հինգ տարիների ընթացքում մեծերի ու երեխաների ջանքերով ճամբարը համալրվեց նոր շինություններով, ստեղծվեցին նոր հարմարություններ: Եվ այսօր զարմանում ես, թե համեմատաբար փոքրիկ բակը ինչպիսի խելացիությամբ է օգտագործված. կողք-կողքի տեղավորված են բետոնե պատերով ու թիթեղե ծածկով ընդարձակ ու հարմար շտաբը, խաղերի հրապարակը, բեմահարթակը, գրադարան-ընթերցասրահը, ծաղկանոցները, ծածկած խաղահրապարակը, ուր երեխաները կարող են խաղալ անձրևոտ օրերին... Եվ ճամբարի կյանքը գընալով ավելի ու ավելի կանոնավոր դարձավ:

Բովանդակալից երեկույթներ, խաղեր, սպորտային մրցություններ, արշավներ, գեղարվեստական ինքնագործունեություն, ծառատունկ, ամենատարբեր թեմաներով ցուցահանդեսների կազմակերպում, պատի թերթի հրատարակում և այլն, և այլն: Ճամբարի պիոներների այդքան բազմազան, բովանդակալից, հետաքրքիր առօրյայի բոլոր միջոցառումների կազմակերպողն ու նախաձեռնողը նույն Հովհաննես քեռին է՝ Գրիգորյան Հովհաննեսը, երկրորդ հարկի բնակիչը, որի պատշգամբի պատուհանները հենց բակի վրա են բացվում:



# ՃԱՄԲԱՐԻ ԵՎ ՎԵՐԱԳՏՆՎԱԾ ՄԱՆԿՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Հետաքրքիր շատ հանդիպումներ են կազմակերպվում ճամբարում. երեխաները ծանոթանում են հին բոլշևիկների, պատերազմի վետերանների, արդյունաբերության առաջավորների, անվանի գիտնականների, գրողների ու դերասանների հետ: Բայց նրանց համար ամենաթանկագին հյուրը մնում է Սովետական Միության հերոս, գեներալ-մայոր Նվեր Սաֆարյանը, որի անունով կոչվում է ճամբարը: Պիոներների լավագույն բարեկամն է անվանի զորավարը:

Ստացվեց այնպես, որ ամառային արձակուրդներից հետո էլ երեխաները չուզեցին հեռանալ իրարից: Այստեղ երեխաների ոչ մի ժամը անօգուտ չէր անցնում: Այսպես շարունակվեց ամբողջ աշունը, հետո ձմեռը, գարունը... և հաջորդ տարին: Այսպես ճամբարը դարձավ Հայաստանում և գուցե ամբողջ Սովետական Միության մեջ առաջին շուրջտարյա բակային պիոներական ճամբարը:

Ամեն գարնան տեղի է ունենում ճամբարային նոր սեզոնի բացման հանդիսավոր արարողությունը. բարձրացվում է դրոշը, և բակային ճամբարի բազմապիսի ու հետաքրքիր կյանքը չի ընդհատվում կլոր տարին, մինչև հետևյալ գարուն: Մեծանում են ճամբարի պիոներները, ավարտում են դպրոցը, գնում են բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորելու, աշխատելու: Ամեն տարի գարնանային հանդիսավոր տողանում նրանց փոխարինում են նորերը, նրանք, որոնք այսօր ընդգրկված են ամենափոքրիկների՝ հոկտեմբերիկների խմբում: Սակայն գնացողներն էլ չեն կտրվում ճամբարից, մասնակցում են նրա կյանքին, օգնում են երեխաներին իրենց փորձով:

Այսօր էլ, ինչպես հինգ տարի առաջ, քեռի Հովհաննեսը երեխաների հետ է: Գալիս է աշխատանքից, փոխում է հագուստը, ճաշում է ու իջնում բակ: Իսկ երբ բակում չէ, ապա անպայման տնային կառավարչությունում կամ կոմերիտմիության շրջկոմում է: «Դե՞, քեռի Հովհաննես,— հարցնում են նրան,— հիմա ինչի՞ համար ես եկել»: «Հասկանո՞ւմ եք,— ասում է նա,— շախմատի խաղատախտակները չեն բավականացնում, եղածներն էլ վաղուց մաշվել են, մի քանի նոր խաղատախտակ է հարկավոր: Եվ հետո՝ ուզում ենք բեմահարթակը մեծացնել. գուցե տախտակի հարցում օգնեք...»: Եվ կարծում եք ամեն անգամ քեռի Հովհաննեսին հեշտությա՞մբ է հաջողվում ձեռք բերել երեխաների համար անհրաժեշտ գույքը կամ շինանյութը: Հաճախ հարկ է լինում օրերով գնալ-գալ, դիմել, խնդրել, բողոքել, նույնիսկ սպառնալ...

Պարզապես զարմանում ես, որքան ժամանակ ու եռանդ է նվիրում այս մարդը երեխաներին, որքան հոգատար ու զգայուն է նրանց նկատմամբ: «Քեռի Հովհաննես,— հարցնում եք նրան,— իսկ այդ ամենը ի՞նչ բավականություն է պատճառում ձեզ»: Հարցնում եք, իսկ նա պատասխանի փոխարեն սկսում է իր կյանքը պատմել. 1917 թվականին, դաշնակների տիրապետության ժամանակ, երբ Երևանում սով էր ու համաճարակ, ութ տարեկան Հովհաննեսը իր հոր՝ վարսավիր Գարեգինի հետ գնաց Էջմիածնի շրջանի Այնալու գյուղը՝ ընտանիքի համար հաց վաստակելու: Ոչ մի լավ բան չի հիշում Հովհաննեսը իր մանկությունից: Հետո Հայաստանում սովետական իշխանություն հաստատվեց, պատանի Հովհաննեսը կոմերիտական դարձավ, Հայաստանի առաջին կոմերիտականներից մեկը: Այնալու գյուղում կոմունիստների հետ կոլեկտիվ տնտեսություն հիմնեց և դեռ տասնիննը տարին չլրացած՝ կամավոր գնաց Կարմիր բանակ: Հայրենական պատերազմի սկզբում Հովհաննես Գրիգորյանը գնդացրային վաշտի հրամանատար էր, մարտերով հասավ մինչև Բեռլին, պատերազմից հետո զորացրվեց, անցավ խաղաղ աշխատանքի: Հիմա սկսել են ճերմակել Հովհաննես քեռու մազերը... Բայց մանկությունից ոչ մի լավ բան չի հիշում... Եթե այս ամենից հետո էլ ոչինչ չես հասկանում, Հովհաննես քեռին բացատրում է. «Մեր մանկությունը տխուր եղավ, և երբ տեսնում եմ, թե ինչպես երջանիկ ու ուրախ են ապրում մեր երեխաները, սիրտս ուրախությունից ցնծում է...»: Եվ քիչ լռելուց հետո ավելացնում է. «Բացի այդ, երեխաների հետ ես ինքս էլ ինձ երեխա եմ զգում և թվում է, թե ապրում եմ իմ երկրորդ, այս անգամ ուրախ մանկությունը...»:



*Լուսանկարները՝ Զ. ԲՇՏԻԿՅԱՆԻ*

*ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ*

# Արջ սարը

(Ղրիմի լեգենդներից)

Հին ժամանակներում Ղրիմի ծովափին ապրում էին աշխատասեր մարդիկ։ Նրանք աշխատում էին օրնիբուն։ Դժվար, շատ ծանր էր նրանց կյանքը։ Եվ այդ բոլորի հետ միասին նրանց վրա իշխում էր չար ու դաժան կախարդը։ Նա նստում էր երկնքում և այնտեղից հսկում, որ մարդիկ հլու-հնազանդ աղոթեն իրեն, չապստամբեն և ցուլ, ոչխար ու ամեն տեսակի կենդանիներ զոհաբերեն։

Դժվար էր ապրել։ Հեշտ չէր նաև աշխատելը։ Բայց նրանք և՛ աշխատում էին, և՛ ապրում։ Մարդիկ մաքրում էին անանցանելի անտառները, հավաքում լեռների ու ժայռերի ավելորդ քարերը, բացում էին նոր աղբյուրներ, տնկում էին խաղողի այգիներ։

Գնալով լավանում, հեշտանում և հարստանում էր մարդկանց կյանքը։ Եվ որքան բարեկեցիկ էր դառնում կյանքը, այնքան մարդիկ ավելի էին հասկանում, որ այդ բոլորը միայն իրենց սեփական աշխատանքով է լինում։ Մարդիկ սկսեցին հավատալ իրենց ուժերին և դադարեցին երկրպագել չար կախարդին։

Կախարդը իմացավ և խիստ բարկացավ։ Երեք օր ու գիշեր երկինքը ծածկվեց սև ամպերով, հայթեց որոտ, փոթորկվեց ծովը։ Բայց մարդիկ չվախեցան։ Նրանք շատ դժվարությունների էին հանդիպել կյանքում. ձկնորսը հաճախ էր փոթորկին դուրս եկել բաց ծով, հովիվը անձրևին և որոտին եղել էր սարում։ Եվ մարդը միշտ հաղթել էր. ձկնորսն իր փոքրիկ նավակով անվնաս ափ էր հասել, հովիվը փրկել էր նախիրը, ուժեղ անձրևից հետո հնձվորը նորից իր դաշտում ցորեն էր ցանել։

Մարդը կախարդին էլ է հաղթում։ Որոտն անցնում է, դուրս է գալիս արևը, ծովը հանդարտվում է և կյանքն ընթանում իր հունով։

Դա ավելի բարկացրեց կախարդին։ Նա տեսավ, որ իշխել այլևս չի կարող։

—Կոչնչացնե՛մ, կկործանե՛մ ամեն ինչ,—որոտաց կախարդը։

Նա արագ սլացավ հյուսիս, որտեղ հսկայական սառույցների մեջ ամուր շղթայված ապրում էր Մեծ Արջը։ Կախարդը տեղաշարժեց հսկա սառույցը, հանեց շղթաները և արջին հրամայեց շարժվել դեպի հարավ։

Ազատված արջը ուրախ-ուրախ լողաց ծովերով, օվկիանոսներով, մոտեցավ Ղրիմի ափին և դուրս եկավ խոր ջրերից, բարձրացավ ցամաք։ Նա այնքան հսկա էր, ծանր և ահռելի, ինչպես անծայրածիր, բարձր սարը, իսկ մորթին նման էր անանցանելի անտառի։ Ջուրը հոսում էր նրա մարմնի վրայով, ասես լեռնային աղբյուրներ ու անտառային ջրվեժներ լինեին։ Նրա վիթխարի մեջքը հասնում էր ամպերին։ Երբ ջրից դուրս էր գալիս, այնպիսի ալիքներ բարձրացան, որ մի քանի գյուղեր հողին հավասարվեցին։

Մեծ Արջը դուրս եկավ ջրից և շարժվեց ափի երկարությամբ։ Ահեղ թաթերով նա ճզմում էր



ամեն ինչ, երկար ճանկերը խոր ակոսում էին հողը, բացելով խոր կիրճեր և հեղեղատներ։ Արջի ծանրության տակ երերում էր հողը։ Նրա ծանրությանը չէին դիմանում անգամ հսկայական ժայռերը։ Ահեղ որոտով ժայռերը փլվում էին, շուրջը տարածելով հսկայական բեկորներ։

Իսկ այնտեղ, որտեղ ընկած է Յալթա քաղաքի հովիտը, Մեծ Արջը գործադրեց իր ամբողջ ուժը։ Նա ծանր թաթերով անխնա հարվածեց, ճանկերով գզգզած քանդեց ու փորեց հողը։ Բարձրաբերձ լեռները հեռացան ծովափից, առաջացան ընդարձակ հովիտներ և գոգավորություններ։ Եվ այդպես ամեն ինչ ավերելով՝ Մեծ Արջը հասավ Պարտենիտյան հովիտը՝ ծածկված և գեղեցիկ բույսերով, շքեղ այգիներով, կանաչ մարգագետիններով և խաղողի ծանր ողկույզներով։

*Արջը նայեց շուրջը և տեսավ, որ ամբողջ Ղրիմում, իսկ գուցե նաև աշխարհում այդպիսի գեղեցիկ տեղ չկա։ Եվ դողաց արջի քար սիրտը։ Ո՛չ, նա այլևս չի կործանի այս հրաշալի երկիրը։ Նա կմնա այստեղ՝ ապրելու, որպեսզի հավիտյան զմայլվի, գեղեցիկ բնությամբ, շնչի լեռնային մաքուր օդը, լողանա Սև ծովի տաք ջրերում։ Նա այլևս չի վերադառնա հյուսիս, որտեղ նրան սպասում է սառցե որջի գերությունը։*

*Արջը բացեց չորացած երախը և այնպես հորանջեց, որ սարերը դղրդացին։ Նա սողաց դեպի ծովը, իջավ թաթերի վրա և երկար ու ագահորեն ջուր խմեց։ Արջի խորը շնչառությունից ծովն ահեղ ալեկոծվեց և բարձր ալիքները տարածվեցին ամբողջ ծովափով։*

*Կախարդը տեսավ, որ արջը նույնպես չի լսում իրեն։ Նա հասկացավ, որ եկել է իր վերջը և մարդը կհաղթի։*

*—Հավե՛րժ մնա։ այդպես,—վերջին անգամ անիծեց կախարդը։*

*Եվ Մեծ Արջը քարացավ տեղում։ Հզոր կողերը վերածվեցին խոր անդունդների, մեջքը դարձավ սարի տափակ գագաթ, իսկ գլուխը՝ սուր լեռ։ Խիտ բուրդը վերածվեց անանցանելի, կաղնու թավ անտառի։*

*Մեծ Արջը դարձավ Արջ-սար։ Միայն Սև ծովն էր շարունակում ալեկոծվել արջի բերանի մոտ, կարծես նա դեռ շարունակում էր ջուր խմել։*

*Անցան շատ դարեր։ Սարի կողքին գյուղեր երևացին։ Միայն թե նրանք բոլորն էլ հեռու էին, կարծես վախենում էին քարացած արջից. իսկ եթե հանկարծ նա վերակենդանանա և նորից, կործանելով ամեն ինչ, քայլի՞ առիով...*

*Բայց ահա Ղրիմ եկան կարմիր վզկապավոր հազարավոր տղաներ և աղջիկներ։ Նրանք իրենց համար սարին շատ մոտ ճամբար կառուցեցին։ Պիոներները չվախեցան Մեծ Արջից։ Չէ՞ որ նրանք լավ գիտեին, որ այդ սարի մասին եղած ամբողջ պատմությունը լոկ լեգենդ է։*

*Իսկ այդ լեգենդը մարդիկ հորինել են, որովհետև սարը իր ձևով շատ նման է Արջի։*

Նկ. ՀՐԱՉԻԿ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ



Ֆ. ԿՐԻՎԻՆ

Աշխարհում ապրում էր մի նկարիչ։

Մի անգամ, երբ դեռ մանուկ էր, նա նկարեց ծերունու մի դիմանկար։ Այդ ծերունուն նա հնարել էր իրենից, բայց դիմանկարում ծերունին ստացվել էր ոնց որ կենդանի։ Փոքրիկ նկարիչը ոչ մի կերպ չէր կարողանում բաժանվել իր աշխատանքից. նա անընդհատ ինչ-որ բան էր ավելացնում, քսմսում էր և այնքան տարվեց, որ այդ ձանձրացրեց ծերունուն։ Նա դիմանկարից դուրս եկավ և բարկացած ասաց.

— Բավական է։ Դու ինձ իսպառ խոշտանգեցիր։

Փոքրիկ նկարիչը իրեն կորցրեց. մինչև այժմ նրան չէր վիճակվել գործ ունենալ այնպիսի ծերուկների հետ, որոնք դուրս են գալիս իրենց դիմանկարներից։

— Ո՞վ եք դուք.— հարցրեց նա։ — Գուցե կախա՞րդ։

— Ո՛չ. այն չէ։

— Ձեռնածու՞։

— Այն չէ։

— Հա, այժմ ես հասկանում եմ,— կռահեց տղան։ Ձեզ, իհարկե, անվանում են Այնչէ։ Միայն թե ես, խոստովանում եմ, այդպիսի անուն երբեք չէի լսել։

— Այս անգամ դու գուշակեցիր, — ասաց ծերուկը։ — Ինձ իրոք այդպես են կոչում։ Եվ գիտե՞ս ինչու։ Բոլորը, ովքեր ինձ հետ գործ են ունենում, գտնում են, որ ես բոլորովին այն չեմ, ինչ որ իրենց պետք է։

— Իսկ դուք ի՞նչ գործեր ունեք. — հարցրեց տղան։

— Դե, — ծանրակշռորեն պատասխանեց ծերուկը. — ես բավականին գործ եմ արել։ Այն բոլոր լավագույնը, որ ստեղծվել է աշխարհում մարդու

կողմից, ստեղծվել է իմ մասնակցությամբ: Երբևէ դու այդ կհասկանաս:

Եվ ծերուկը քաշվեց իր կտավի մեջ:

Փոքրիկ նկարիչն այժմ արդեն չէր համարձակվում դիպչել նրան: Նա թաքցրեց ծերունու դիմանկարը և շուտով մոռացավ նրան:

Տարիներ անցան: Փոքրիկ նկարիչը մեծացավ և դարձավ իսկական նկարիչ: Նրա արվեստը ճանաչեցին և սիրեցին, նրա նկարները զարդարում էին լավագույն պատկերասրահները: Շատերը նախանձում էին նկարչին՝ նրա փառքին, նրա հաջողությանը, նրան համարելով երջանիկ մարդ:

Իսկ իրականում այդ այդպես չէր:

Նկարիչը դժգոհ էր իր նկարներից, որոնք նրան ուրախություն էին պատճառում միայն այն ժամանակ, երբ նա աշխատում էր: Իսկ երբ վերջանում էր աշխատանքը, ծագում էին կասկածները: Յուրաքանչյուր նոր նկարը նրան անհաջողություն էր թվում:

Մի անգամ, տուն վերադառնալով իր նկարների հերթական ցուցահանդեսից, նա երկար ժամանակ չէր կարողանում քնել: Նա մտովի մեկ առ մեկ պատկերացնում էր իր նկարները և սրտնեղում այն մարդկանցից, որոնք հիանում էին դրանցով:

— Այն չէ՛, բոլորովին այն չէ՛, — բացականչեց նկարիչը:

Եվ հանկարծ նրա առջև հայտնվեց ծերուկը: Այդ այն ծերուկն էր, որին նկարիչը նկարել էր մանուկ հասակում:

— Բարև, — ասաց ծերունին, — դու ինձ, կարծեմ, կանչեցի՞ր:

— Ո՞վ եք դուք, — զարմացավ նկարիչը:

— Դու, տեսնում եմ, ինձ չճանաչեցիր, — դառնացավ ծերուկը: — Հիշիր այն դիմանկարը, որը դու մի ժամանակ նկարել ես:

— Մի՛ խոսեք ինձ հետ իմ աշխատանքների մասին, — խնդրեց նկարիչը: — Որքան էլ որ ճիգ եմ թափում, ոչինչ չի ստացվում: Բայց ինչու՞ բոլորին դուր են գալիս իմ նկարները:

— Ինչպե՞ս թե բոլորին: Ինձ, օրինակ, առանձնապես դուր չեն գալիս:

— Ձեզ դուր չե՞ն գալիս իմ նկարները:

— Իսկ ի՞նչ կա որ: Չէ՞ որ քեզ էլ դրանք դուր չեն գալիս:

Շատ վշտացրեց նկարչին այդ խոստովանությունը: Ճիշտ է, նա առաջ էլ քննադատորեն էր մոտենում իր աշխատանքներին, բայց նրան մխիթարում էր այն, որ ինքը այդ կարծիքի մեջ միայնակ է և կարող է պատահել, սխալվում է:

Դեռ երբեք նկարիչն այդպես լարված չէր աշխատել: Նոր նկարները նրան բերեցին ավելի մեծ փառք և վերջնականապես ցրեցին բոլոր կասկածները:

«Եթե ծերուկը տեսներ այդ նկարները, — մտածում էր նա, — դրանք, հավանական է, նրան դուր կգային»:

Բայց ծերունին այլևս չէր երևում:

Անցան էլի շատ տարիներ:

Եվ ահա մի անգամ, արդեն հիվանդ ու ծեր նկարիչը, փորփրելով իր արխիվները, գտավ ծերունու դիմանկարը:

«Այս ի՞նչ նկար է, — մտածեց նա: — Ես սա բոլորովին չեմ հիշում»:

— Դու ինձ նորից չճանաչեցիր, — ասաց ծերուկը, դուրս գալով իր դիմանկարից: — Ես անընդհատ սպասում էի, որ դու ինձ կանչեիր, բայց դու այդպես էլ չկանչեցիր: Դու, երևում է, լիովին գոհ ես քո աշխատանքից և դրա համար էլ մոռացել ես ծերուկ Այնչէին, իսկ քեզ միայն նա կարող է օգնել ստեղծելու որևէ կարգին բան: Ահա քո առջև են նկարներդ՝ նայիր դրանց իմ աչքերով:



Եվ հանկարծ բոլոր նկարները ասես կերպարանափոխվեցին: Նկարիչը նայում էր կտավներին ու չէր հավատում, որ ինքը դրանց է նվիրել իր ամբողջ կյանքը:

— Ի՞նչ է այդ, — աղաղակեց նա: — Մի՞թե սրանք իմ նկարներն են: Ո՛չ, այդ այն չէ՛: Այն չէ՛: Այն չէ՛...

— Դու կանչում ես ինձ, — տխրորեն ասաց ծերունին: — Բայց հիմա արդեն ուշ է: Դժբախտաբար, ուշ:

Նկ. ՀՐԱՉԻԿ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ

Թարգմ. ՆՈՐԱ ԱՎԱԳՅԱՆԻ

# ՀԱՅ ՄԵԾԱՆՈՒՆ ԲԺԻՇԿԸ



850



*Մարդկության հայտնի հիվանդությունների մեծ մասի առաջացման պատճառը մանրէներն են: Դրանք, թեև այնքան փոքր են, որ միայն խոշորացույցով են երևում, սակայն, ընկնելով մարդու օրգանիզմի մեջ, սոսկալի «գործեր» են կատարում: Մոտ երեք հարյուր տարի առաջ նիդերլանդացի ապակեգործ Վան Լևենհուկը խոշորացույցի միջոցով կարողացավ առաջին անգամ մանրէներ տեսնել: Հետագայում պարզվեց, որ այդ մանրէներից շատերը հիվանդաբեր են և դրանք են մարդկության աղետներ բերող թշնամիները: Բայց Անտոնի Վան Լևենհուկից դեռևս շատ դարեր առաջ, XII դարում Կիլիկյան Հայաստանում ապրող մի բժիշկ կռահեց, թե ինչը կարող է լինել վարակիչ հիվանդությունների սկզբնաղբյուրը: Դա միջնադարի հայ խոշորագույն բժիշկ, գիտնական, փիլիսոփա և աստղաբաշխ Մխիթար Հերացին էր, որի ծննդյան 850-ամյակն ամենայն հանդիսավորությամբ նշվում է այս տարի, ինչպես մեզ մոտ՝ Հայաստանում, այնպես էլ աշխարհի առաջադեմ բժշկագետների կողմից:*

Հերացին ծնվել է Իրանի Հեր (այժմ՝ Խոյ) քաղաքում, այնտեղ էլ ուսում առել: Այնուհետև տեղափոխվել է Կիլիկիա, որտեղ էլ անցել է նրա բժշկական, գիտական բեղմնավոր գործունեությունը:

Հերացու մեծ հեղինակության մասին է վկայում նաև այն, որ նրա ժամանակակից հայ անվանի գրող Ներսես Շնորհալին երկու բանաստեղծություն է նվիրել մեծ բժշկապետին:

Մխիթար Հերացուն էին դիմում բուժվելու համար հայ արքաները, եկեղեցու մեծավորները, որոնցից Գրիգոր Պահլավունի Տղան էլ եղավ բժշկապետի հովանավորողը և քաջալերողը՝ նրա գիտական և բժշկական գործերում: Հայ առաջադեմ մարդիկ զգում էին, որ Հերացին կարող է մեծ ավանդ թողնել մեր մշակույթի պատմության մեջ, նպաստել գիտության զարգացմանը: Սակայն Հերացին նախ և առաջ հասարակ ժողովրդի բժիշկն էր և ամբողջովին ու անձնվիրաբար ծառայում էր նրան: Այդ էր պատճառը, որ հայ մեծ բժշկապետը իր հռչակավոր գիտական աշխատությունը՝ «Ջերմանց մխիթարությունը» գրեց ոչ թե իր ժամանակի խրթին գրաբարով, այլ ժողովրդին հասկանալի խոսակցական լեզվով՝ «ռամկօրեն»:

Հերացին շատ լավ տիրապետում էր հունարենին, արաբերենին, պարսկերենին: Նա կարող էր իր աշխատությունը գրել հենց այդ լեզուներից որևէ մեկով, որը, ինչ խոսք, աշխարհով մեկ շատ հայտնի կդարձներ հեղինակին: Այդպես էին վարվում մյուս ազգերի շատ անվանի բժիշկներ՝ առաջին հերթին մտածելով իրենց փառքի և հեղինակության մասին: Սակայն Հերացին նախ և առաջ մտահոգված էր իր ժողովրդի բախտով, իր ժողովրդի մշակույթի զարգացմամբ:

Հերացու աշխատությունը, որի շարադրումը նա ավարտեց 1184



թվականին, խոշոր երևույթ էր հայ բժշկական կյանքում։ Ստեղծվեց համաշխարհային և հայ բժշկության անցած ժամանակների մեծ փորձն իր մեջ ամփոփող մի իսկական հանրագիտարան։

Մեզ է հասել նաև Հերացու աշխատություններից մեկ ուրիշը՝ «Քաբերի ՚ նրանց բուժիչ հատկությունների մասին»։ Պահպանվել են նաև կենսաբանության, մարդակազմության և բժշկական այլ հարցերի վերաբերյալ Հերացու գրած աշխատություններից պատառիկներ, իսկ ամբողջական այդ գործերը անհետացել են։

XII դարի բժշկությունը, ինչ խոսք, շատ և շատ երևույթներ դեռևս անհայտ էին։ Ախտորոշման այսօրվա ճշգրիտ գործիքները, մանավանդ ռենտգենյան ապարատը, հնարավորություն են ընձեռնում առանց դժվարության պարզելու հիվանդությունների բնույթը, տարածվածությունը մարդու զանազան օրգաններում։ Հերացին այդ ամենից զուրկ էր, նա ստիպված էր այդ անել միայն զննելու, շոշափելու, հարցուփորձի միջոցով։ Եվ դեռևս XII դարում հայ մեծանուն բժիշկն իր մեծ տաղանդի շնորհիվ, կարողացավ հիվանդությունների ախտորոշման և բուժման հարցերում շատ մեծ նվաճումների հասնել՝ զգալի չափով նպաստելով բժշկության առաջընթացին։ Նա մի քանի գլխով առաջ անցավ իր ժամանակակիցներից՝ հիվանդությունների առաջացման պատճառները փնտրելու և բուժման միջոցներ որոնելու գործում։

Հիվանդներին զննելու տասը հիմնական հարցեր մշակեց Հերացին, որոնք լայն կիրառում գտան հայ բժշկության մեջ դարեր շարունակ։ Ծանոթանում ես այդ սկզբունքներին և զգում, թե որքան խորագին և հեռանկարային է եղել դրանց հեղինակը բուժման գործում։

Այդ նա էր, որ իր ժամանակի հնարավորությունների սահմաններում կարողացավ զանազանել մի շարք հիվանդություններ և բուժման արդյունավետ միջոցներ առաջարկել։ Հերացին մեծ տեղ էր տալիս սննդին որպես առողջության պահպանման և հիվանդությունները բուժելու շատ զորեղ միջոցի, ընդ որում տարբեր սնունդ էր առաջարկում՝ նայած հիվանդությունների բնույթին, դրանց ծանրությանը, հիվանդի տարիքին։ Նա կարողացավ զգալ, որ մաշկը, բացի այլ ֆունկցիաներից, նաև «գաղտնի շնչահանների դեր է կատարում»։

Ահա թե ինչու, ինչպես մեզ մոտ, այնպես էլ աշխարհի տարբեր երկրներում շատ բարձր գնահատեցին հայ բժշկապետի գիտական գործը։ Նրա «Ջերմանց մխիթարությունը» Փարիզի ազգային մատենադարանի զարդն է կազմում։

Դեռևս 1832 թվականին այդ հռչակավոր աշխատությունը հայերեն հրատարակվեց Վենետիկում։ 1908 թվականին թարգմանվեց գերմաներեն և հրատարակվեց Լայպցիգում։ Թարգմանիչը՝ նշանավոր գիտնական Էռնեստ Զայդելը, մանրամասն մեկնաբանեց այդ գիրքը։ Զայդելը Հերացու գրքի թարգմանության համար ստացավ միջազգային բարձր մրցանակ։ Հայ բժշկի գիրքը թարգմանվել և հրատարակվել է նաև ռուսերեն։ Նրա մասին հիացմունքի ջերմ տողեր են գրել աշխարհահռչակ շատ գիտնականներ։

Անցել են երկար տարիներ, սակայն հայ մեծ բժշկի փառքը չի մոռացվում։ Այսօր էլ նա շարունակում է հիացմունք պատճառել՝ շատ մեծ «հրաշքներ» տեսած մեր օրերի անվանի գիտնականներին։ Հերացին պատկանում է այն խոշոր գիտնականների շարքին, որոնցով պարծենում է ոչ միայն հայ ժողովուրդը, այլև ողջ գիտական աշխարհը։

Պրոֆեսոր ՌԱՖԱՅԵԼ
ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

# ԹԵՅԻ ՄԱՍԻՆ

Մինչև հեղափոխությունը Անդրկովկասում թեյի արդյունաբերական աճեցման լուրջ փորձ արեց թեյի խոշոր ֆիրմայի տեր Կ. Ս. Պոպովը: 1892 թվին նա Բաթումիից ոչ հեռու երեք հողամաս ձեռք բերեց և, չխնայելով ծախսերը, երեք էքսպեդիցիա ուղարկեց Չինաստան: Այդ ժամանակամիջոցում նա անձամբ ամենայն մանրամասնությամբ ուսումնասիրում էր թեյի գործը:

Այդ ուղևորությունների հիմնական խնդիրներից մեկը թեյի թփերի գնումն էր: Դա այնքան էլ հեշտ չէր: Այն ժամանակ Չինաստանից թեյի թփեր, դուրս բերելը արգելվում էր: Բայց դրամը ամենազոր է: 10.000 թուփ ձեռք բերվեց, որ պետք է թաքուն տեղափոխվեր Ռուսաստան: Թփերը Չինաստանի խորքերից գետանավերով դեպի ծով էին տեղափոխում: Ճանապարհի մեծ մասն անցել էին, երբ քարավանի վրա հարձակվեցին թաքստոցից: Առագաստանավերը այրեցին և թփերի կեսը ոչնչացավ: Նավերին ուղեկցող մի ռուս ծառայողի նկատել էին և հաջորդ տարվա ուղևորության ժամանակ, նրան այնքան էին ծեծել, որ մեռած կարծելով, փողոց էին նետել:

Ի վերջո թեյի մոտ 5000 թուփ հասցրել էին չինական նավահանգիստներից մեկը: Այստեղ վարձել էին մի նավ, հատուկ հարմարեցրել այնպես, որ կարողանան տեղափոխել ապակեպատ տուփերը, որոնց մեջ թեյի թփերն էին:

Թփերը ջրելու համար քաղցրահամ ջրի մեծ պաշար էին վերցրել: Օվկիանոսով անցնող երկար ճանապարհին ոչնչացավ թփերի մի մասն էլ: Բաթումի հասավ ընդամենը 2000 թուփ, որը տնկեցին Պոպովի կալվածքներում: Հետագա բոլոր տեսակներից տարբերելու համար այդ թփերը «օրիգինալ» կոչվեցին:

Դրանից հետո Պոպովը Չինաստանից միայն սերմեր էր ներմուծում, որոնք մինչև Բաթումի հասնելը փչանում էին, որովհետև մատակարարողները, վախենալով մրցակցությունից, վատ ապրանք էին ուղարկում և կամ էլ սերմերը բարձր ջերմաստիճանի տակ կորցնում էին իրենց ծլունակությունը: Ներմուծված սերմերի միայն մի մասը կարելի էր տնկել: Թփերը բազմացրին «օրիգինալներից» ստացված սերմերով: Եվ այնուամենայնիվ, 1899 թվի սկզբներին Պոպովի կալվածքներում 1.500.000 թեյի թուփ էր աճում:

Արդեն 1897 թվին Պոպովը կարողացավ անցնել պատրաստի թեյի արտադրության: Անգլիայից թեյի ֆաբրիկայի մի ամբողջ կոմպլեքս դուրս գրվեց ու տեղափոխվեց Բաթումի:

1898 թվին ֆաբրիկան թողարկեց 13.000 ֆունտ պատրաստի թեյ: Դա առաջին վրացական թեյն էր:

1900 թվին Փարիզի համաշխարհային ցուցահանդեսում Կ. Ս. Պոպովը պարգևատրվեց ոսկե մեդալով՝ «Կովկասյան թեյի համար, որ լավագույնն է աշխարհում»:



ԹԵՅ ՏԻԲԵԹԱԿԱՆ ձևով: Կանաչ թեյի սալիկը դնում են սառը ջրով լի կաթսայի մեջ, հասցնում եռման աստիճանի և մի քանի ժամ եռացնում, այնքան, մինչև թրմվելով սևանա: Այնուհետև մի քիչ աղ կամ թեյի սոդա են ավելացնում, մի մեծ կտոր կարագ (յուղ), խառնում են և 30—40 բաժակ խմում օրվա ընթացքում:

ԹԵՅ ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ձևով: Թեյի սալիկը փոշի են դարձնում ու եփում կաթսայի մեջ, կաթով, յուղով, կումիսով (ձիու կաթից պատրաստված ըմպելիք), ճարպով, ալյուրով, բրնձով, աղով:

ԹԵՅ ՀՅՈՒՍԻՍԱՖՐԻԿՅԱՆ ձևով: Մետաղե թեյնիկի մեջ ջուր են լցնում, եռալուց առաջ ավելացնում են թեյը ու 10—15 րոպե եռացնում: Բավականին շատ շաքար են ավելացնում, թողնում են, որ այն լուծվի, հետո մի քանի անգամ թեյնիկից բաժակ և բաժակից թեյնիկ են դատարկում լուծույթը, մինչև որ այն փրփրի գարեջրի պես: Այդ ժամանակ թեյը պատրաստ են համարում ու լցնում գավաթները:

Որպեսզի օգտագործված թեյի մնացորդը նույնպես պիտանի լինի, կարելի է առաջարկել Բիրմայում ընդունված ձևը: Այնտեղ օգտագործված թեյը համեմում են սխտորով և ուտում:

Դժվար է ասել համով է այն թե ոչ, բայց երևի օգտակար է:



# Թիթեռների թանգարանում

Նկ. ՍԵԴԱ ՎԱՐԴԻԿՅԱՆԻ

Այսօր մենք կծանոթանանք մի շատ հետաքրքիր, եզակի հավաքածուի հետ, որը գտնվում է Երևանում, ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի կենդանաբանության ինստիտուտում:

Նախ ասենք, որ այդ հավաքածուի թիթեռների թիվը հասնում է տասնյակ հազարների, և որ նրանց մեջ կան թիթեռներ, որոնք 60 «տարեկան» են:

Հավաքածուն շատ արժեքավոր է, այնտեղ պահպանվում են Հայաստանին բնորոշ այնպիսի թիթեռներ, որոնց աշխարհի նշանավոր կենդանաբանական թանգարաններում չի կարելի գտնել: Դարերի ընթացքում մի շարք թիթեռներ հարմարվել և ապրում են միայն Հայաստանում: Բնության կամակորությո՞ւնն է պատճառը, որ այսօր Լոնդոնի, Պրագայի, Վիեննայի, Բուխարեստի կենդանաբանական նշանավոր թանգարաններում բնագետները չեն կարող գտնել մեր լեռնաշխարհի՝ հատուկ թիթեռների շատ տեսակներ:

Հայաստանի թիթեռներն աչքի են ընկնում իրենց գեղեցկությամբ, վառ գունազարդումով և զարմանահրաշ նախշերով: Նրանց անունները նույնպես գեղեցիկ են ու հետաքրքրական: Բնությունն ինքն է հուշում մարդկանց, թե ինչ անուն կարելի է տալ այս կամ այն թիթեռին:

ԱՌԱԳԱՍՏԱՎՈՐՆԵՐ — Սրանք մեծ թիթեռներ են՝ սևի, դեղինի ու կարմիրի հիանալի համադրությամբ: Առագաստավորներն օժտված են ճախրելու հմտությամբ: Նրանց եղուստավոր թևերը քամուց հալածված առագաստներ են հիշեցնում: Ի՞նչ եք կարծում, զուցե առաջին առագաստանավի համար այս թիթեռն է օրինակ ծառայել:

ՍՖԻՆՔՍՆԵՐ — Եթե ժամանակակից ռեակտիվ ինքնաթիռները շարենք կողք-կողքի ու լուսանկարենք վերևից, ապա շատ նման կլինեն տուփերում շարված թիթեռների այս խմբին: Նույնիսկ նրանց արծաթավուն մետաղափայլը հիշեցնում է, որ Հայաստանում դեռ հազարամյակներ առաջ մարդը հանդիպել է այս թիթեռներին:

ԱՊԱԿԵԹԻԹԵՌՆԵՐ — Ա՛յ թե թափանցիկ թևեր ունեն: Փորձի համար կարելի է այս թիթեռի թևերի տակ դնել թերթից կտրված մի փոքրիկ հատված և հեշտությամբ կարդալ:

Հայաստանում թիթեռների մի





ընտանիք էլ կա, որը կոչվում է ԵՐԿՐԱՉԱՓ: Եթե դուք ցանկանաք պատկերացնել, թե ինչպես կարելի է մեր հսկա երկրագնդի տրամագիծը թիզ առ թիզ չափել, ուշադիր նայեք երկրաչափի թրթուրի քայլվածքին:

Թիթեռներից շատերը բնության գեղատեսիլ թշնամիներն են: Կենդանաբանական ինստիտուտի այս հավաքածուն օգնում է ճանաչելու վնասատու թիթեռներին և պայքարելու նրանց դեմ:

Թիթեռները բաժանվում են երկու խմբի՝ ցերեկային և գիշերային: Երկրաչափը գիշերային թիթեռ է:

ԽԺՌՈՂ ԵՐԿՐԱՉԱՓ — Եթե թիթեռների այս տեսակը շատ է բազմանում, ապա կարճ ժամանակում անտառի հսկա տարածությունները զրկվում են կանաչ սաղարթից: Թիթեռներն այնպես են խժռում տերևները, որ անտառում նույնիսկ խշշոց է լսվում: Մի տարի այդպես եղավ Ծաղկաձորում: Այս երկրաչափն ամենակեր է, կարող է վնասել բազմաթիվ ծառատեսակների:

ՀՍԿԱՆ ԵՎ ՊՍՏԻԿ-ՃՍՏԻԿԸ — Թիթեռների հսկան, այսինքն ամենամեծը՝ 8–9 սանտիմետր է, իսկ ամենափոքրը՝ մի քանի միլիմետր: Ամենավնասակարն էլ հենց այդ փոքր թիթեռնիկներն են՝ ցեցերը: Նրանք էլ են ամենակեր: Ուտում են ամեն ինչ՝ կաշի, փետուր, բուրդ, բույսեր: Ցեցերի վնասատուներն էլ նրանց անտեսանելի թրթուրներն են:

ՕԳՏԱԿԱՐ ԹԻԹԵՌՆԵՐ — Ափսո՛ս, որ սրանք քիչ են: Դրանցից մեկը ձեզ ծանոթ շերամն



է: Շատ վաղուց մարդիկ ընտելացրել են այդ թիթեռին և նրան «ստիպել», որ իրենց համար մետաքսյա թել արտադրի: Վայրի շերամ Հայաստանում այլևս չկա: Այժմ մեզ մոտ վայրի վիճակում հանդիպում է մեկ այլ օգտակար թիթեռ՝ կաղնու մետաքսագործ թիթեռը:

Բնագիտությունից դուք սովորել եք, որ թիթեռները նպաստում են բույսերի փոշոտմանը: Իրոք որ նրանք անփոխարինելի են այդ գործում: Իրենց փոքրիկ տոտիկներով թիթեռները ծաղկափոշին տեղափոխում են մի բույսից մյուսը և ապահովում բարձր բերքը:

Այս թիթեռները, որոնց մասին դուք այսօր իմացաք, կենդանաբանական ինստիտուտի հավաքածուի միայն մի չնչին մասն են կազմում: Մի՛ մոռացեք, որ չորացած թիթեռներն էլ թշնամիներ ունեն: Եվ ի՜նչ թշնամի. ԱՆՏՐԵՆՈՒՍ անունով մի փոքրիկ բզեզ, որի թրթուրն ուտում, փոշիացնում է հավաքածուի թիթեռներին: Նավթալին. ահա թիթեռների թանգարանի պահապանը: Նավթալին ամենուրեք՝ արկղներում, պահարաններում, պատուհանի գոգերին... Իսկ եթե հանկարծ արկղներից որևէ մեկում անտրենուսի մի թրթուր հայտնաբերվի, ապա հազարավոր թիթեռներ «կգնան լողարան»՝ ախտահանվելու հատուկ խցիկներում: Ինչե՞ր կտեսնեք դուք, եթե այցելեք այդ թանգարանը: Փայտյա տուփերի այդ գեղեցիկ, բազմատեսակ բնակիչներին ծա-



նոթանալուց բացի, դուք կիմանաք նաև, թե ինչպիսի հոգատարությամբ են պահպանվում նրանք:

*ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ*



Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 7 Հուլիս 1968 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Շապիկի առաջին էջը՝ նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Ռ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղարվեստական խմբագիր)

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 56—32—72, 2—68—16, 56—14—96,

ՎՖ 06587: Պատվեր՝ 932: Տպաքանակ՝ 53600: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 22/VII 1968 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

Գինը՝ 10 կ.


Մենք տիեզերագնացներ ենք։ Տիեզերանավի անձնակազմը բաղկացած է հինգ հոգուց։ Նավում կա՝ ղեկավարման խցիկ (նշված է 1 թվանշանով), դիտման կետ (2), էլեկտրոնային-հաշվիչ մեքենա (3), օժանդակ հրթիռներ (4), ատոմային ռեակտոր (5)։ Աշխատանքային տեղերը բաժանելու համար զառ ենք գցում։ Ում ընկնում է ամենափոքր թիվը, նա գնալու է 1 աշխատանքային տեղը, նրա կողքին նստածը՝ 2 տեղը և այլն։

Տիեզերանավում անկշռելիության վիճակ է։ Մենք հենց նոր ճաշել ենք ճաշասենյակում (այն նշված է «ստարտ» բառով) և ուղևորվում ենք մեր տեղերը։ Մենք ստիպված ենք շարժվել անկշռելիության վիճակում, իսկ դա հեշտ չէ, և, բացի այդ, ճանապարհը կտրում են միջնորմները, պատերը, սանդուղքները և այլ արգելքներ։ Հաղթում է նա, ով առաջինն է հասնում իր աշխատանքային տեղին, որը նշված է սև ուղղանկյունով։



Շարժվելիս անհրաժեշտ է խիստ զգույշ լինել, պատահաբար տիեզերանավի մյուս ծայրը չթռչելու համար։ Յուրաքանչյուրն իրավունք ունի անելու միայն մեկ քայլ, ինչպիսի թիվ էլ որ նրան ընկած լինի։ Թիվը ցույց է տալիս միայն այդ միակ քայլի ուղղությունը։



5 թիվը ցույց է տալիս, որ կարելի է մեկ քայլ անել ցանկացած չորս ուղղություններով, իսկ 6-ը՝ ցանկացած ութ ուղղություններով։

Ուրիշ էլ ի՞նչ կա մեր տիեզերանավում։ Նախ և առաջ՝ սանդուղքներ։ Եթե ընկնում ես այն շրջ-



ջանակի մեջ, որով սկսվում է սանդուղքը, կարող ես մեկ քայլից ավելի անել՝ բարձրանալ մինչև վերջ։ Բայց եթե սանդուղքը քեզ հեռացնում է նպատակից, մի՛ բարձրացիր, մնա տեղում։

Եթե մոտեցել ես ոչ թե սանդուղքի հիմքին, այլ կողքին, ապա նրանով բարձրանալ չի կարելի։ Հարկավոր է [illegible] նրանից հակառակ ուղղությամբ։

# ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ԽԱՂ




*Բունակները հեշտացնում են շարժումը անկշռելիության վիճակում: Նա, ով հասել է բունակին, շարունակում է ճանապարհը մինչև նրա վերջը:*



*Եթե կանգ ես առել պատի կամ միջնորմի մոտ և պետք է քայլես այդ ուղղությամբ, որը հնարավոր չէ, դու հրվում ես պատից և քայլում հակառակ կողմը: Եթե շուրջդ երկու-երեք կողմից պատեր են (ինչպես մագնիսական կոշիկների (Մ) պահեստի մոտ) և շարժվելու տեղ չկա՝ մնում ես տեղում:*

*Կարող է պատահել և այսպես. դու մտնում ես այն վանդակի մեջ, որն արդեն գրավված է ընկերոջդ կողմից: Այդ դեպքում նա ազատում է վանդակը, մի քայլ առաջ շարժվելով:*

*Հաղթելու ամենամեծ հնարավորությունները ստանում է նա, ով հասնում է մագնիսական կոշիկների պահեստին: Նա փոխում է կոշիկները, և անկշռելիությունը նրա համար վերանում է: Հիմա նա բոլորովին այլ կերպ է քայլում, քան մյուսները, խաղաքարի վրայի թվանշանը նրա համար արդեն նշանակում է ոչ թե ուղղությունը, ինչպես առաջ, այլ քայլերի քանակը: Ուղղությունը նա ընտրում է իր ցանկությամբ: Ահա թե ինչպիսի առավելություն են տալիս մագնիսական ներբաններով կոշիկները: Հարկավոր է միայն հասնել պահեստին:*

*Եվ այսպես, խաղն սկսված է:*

*Որպեսզի խաղալն ավելի հարմար լինի, խորհուրդ ենք տալիս այս գծագիրը արտանկարել ստվարաթղթի կամ որևէ հաստ թղթի մեծ թերթի վրա: Վանդակների մեծությունը կարող է լինել 1 սմ²: Իսկ թե ինչպես պատրաստել զառերն ու խաղաքարերը՝ մտածեք ինքներդ:*

